# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ




ՓԵՏՐՎԱՐ

4

1964

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78։

**Адрес редакции** — Ереван ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78:





Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 4
ՓԵՏՐՎԱՐ
1964

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ


### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՈՒՄԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳԼԽԱՎՈՐ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆ Է

*ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում մեծ ճառով հանդես եկավ ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար, ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ ընկեր Ն. Ս. Խրուշչովը։ Նա ասաց, որ պլենումի որոշումները ամբողջովին ու լիովին ուղղված կլինեն XXII համագումարի ընդունած՝ պարտիայի ծրագրի կատարման, մեր ամբողջ էկոնոմիկայի զարգացման, սննդամթերքի աճող պահանջմունքների բավարարման նպատակին։*

*Երբ մենք որոշում ընդունենք, արտահայտենք մեր կամքը, մեր համախմբվածությունը և այդ հարցի կարևորագույն միասնական ըմբռնումը, դրանից հետո մենք պետք է ցույց տանք մեր կազմակերպական ընդունակությունները, պետք է բոլոր կոլտնտեսականների, մեխանիզատորների, սովխոզների աշխատողների, ղեկավարների, գիտնականների և մասնագետների, գյուղատնտեսության զարգացման բնագավառում ժողովրդի բարօրության համար աշխատող բոլոր մարդկանց ջանքերն ուղղենք կոնկրետ գործերի։ Մեր պարտիայի ուժը հենց այն է, որ նրա խոսքը գործից չի տարբերվում։*

*Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումները, նշում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը, ժողովուրդն անվանում է պատմական որոշումներ։ Եվ դա իրոք այդպես է։ Քիմիական արդյունաբերության արագ զարգացման միջոցառումների իրականացումը խոր ազդեցություն կգործի*

կոմունիստական շինարարության ամբողջ ընթացքի վրա։ Դա կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման վերաբերյալ ՍՄԿԿ ծրագրի հիմնական դրույթների կատարման՝ համակողմանիորեն մշակված կոնկրետ պլանն է։

Քիմիան բացառիկ նշանակություն ունի սովետական էկոնոմիկայի բոլոր ճյուղերի համար։ Բայց հատկապես մեծ է նրա ազդեցությունը գյուղատնտեսության վրա։ Գյուղատնտեսության քիմիացումը ըստ էության մի հեղափոխություն է գյուղատնտեսական արտադրության ասպարեզում, ինտենսիվացման ուղիով նրա զարգացման գործում։ Եվ եթե Ամերիկայի Միացյալ Նահանգներում և մյուս զարգացած կապիտալիստական երկրներում գյուղատնտեսության քիմիացումը իրագործվել է տասնամյակների ընթացքում, ապա մենք պետք է այն կատարենք մի յոթ տարվա ընթացքում։ Եվ մենք կլուծենք այդ խնդիրը։

Մենք, ընկերներ, մեծ ու դժվարին աշխատանք պետք է կատարենք։ Քիմիացման, ոռոգման զարգացման ու մեքենայացման հիման վրա հարկավոր է կարճ ժամանակում կրկնապատկել և եռապատկել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Դա հեշտ խնդիր չէ։ Այդ խնդիրը մեր ուժից վեր էր մի քանի տարի առաջ, բայց միանգամայն ռեալ է դառնում այժմ։ Քիմիայի զարգացման հետ մեկտեղ պայմաններ են ստեղծվում ապահովելու երկրի՝ ամենաարժեքավոր մթերքների պահանջմունքների լրիվ բավարարումը։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը բերում է վառ օրինակներ ու թվեր, որոնք ցույց են տալիս, թե վերջին տասնամյակում ինչպես արմատապես փոխվել է գյուղատնտեսության բուն արտադրա-տնտեսական բազան։ Հենվելով այդ բազայի վրա, ասում է նա, մենք կարող ենք այժմ մեր առջև որպես այսօրվա խնդիր դնել՝ խիստ բարձրացնել գյուղատնտեսական արտադրության ինտենսիվությունը, բարձրացնել հիմնական կուլտուրաների բերքատվությունը և անասնապահության մթերատվությունը, ավելացնել վարելահողի յուրաքանչյուր հեկտարից հացահատիկի, ինչպես նաև հարյուր հեկտար հողատարածության դիմաց մսի և կաթի արտադրությունը։

Ի՞նչ է ինտենսիվացումը։ Մենք պետք է այդ ընդհանուր հասկացողությունը թարգմանենք արտադրության կոնկրետ լեզվով։ Կոլտնտեսականի կամ սովխո-





զի բանվորի համար, այն մարդու համար, որը գյուղատնտեսական մթերքներ է արտադրում, ինտենսիվացում նշանակում է, թե ինչպես միևնույն ծախսերով ստանալ ավելի շատ մթերք։

Գյուղատնտեսության վարման ինտենսիվությունը մեծապես կախված է մասնագիտացումից, այս կամ այն տնտեսության հնարավորությունների ճիշտ օգտագործումից։

Ի՞նչ բնույթ պետք է կրի արտադրության մասնագիտացումը մեր երկրի կոլտնտեսություններում և սովխոզներում։

Նախ և առաջ, դա պետք է լինի զոնալ մասնագիտացում, որի նպատակն է առավելագույն չափով արտադրել տվյալ գոտու այն մթերքները, որոնց համար առավել բարենպաստ պայմաններ կան։ Օրինակ, Էստոնիան, Լատվիան, Լիտվան, Բելոռուսիան կաթնա-մսատու անասնապահության զարգացման լավ պայմաններ ունեն։ Հենց այստեղ էլ մենք պետք է վերցնենք մսի և կաթի արտադրությունը մեծապես ավելացնելու, խոզերը բտելու կուրս։

Զոնալ մասնագիտացման հետ մեկտեղ մեզանում լայն տարածում պետք է ստանա ներտնտեսական մասնագիտացումը, օրինակ, մեկ բրիգադում՝ կաթնային ֆերմա, մյուս բրիգադում՝ խոշոր եղջերավոր անասունների բտում, երրորդ բրիգադում՝ խոզերի բտում։

Խոշոր ֆերմաների առկայությունը թույլ կտա մեքենայացնել անասնապահության աշխատանքի հիմնական պրոցեսները, ինչպես նաև կերի պատրաստումն ու մատակարարումը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։

Ընկ. Ն. Ս. Խրուշչովը նշում է, որ անասնապահության ասպարեզում ինտենսիվացումը աներևակայելի է առանց կերային կուլտուրաների և, մանավանդ, եգիպտացորենի ու շաքարի ճակնդեղի բարձր բերք ստանալու։

Այժմ բոլոր գոտիներում ապացուցված է սիլոսացու եգիպտացորեն աճեցնելու արդյունավետությունը։ Որպես կանոն, հարյուր հեկտարի հաշվով ամենից շատ միս ու կաթ են արտադրում այն կոլտնտեսություններն ու սովխոզները, որոնք սովորել են եգիպտացորեն աճեցնել։ Այդպիսի տնտեսություններ կան մեր երկրի բառացիորեն յուրաքանչյուր գոտում։ Բայց կան նաև այնպիսի տնտեսություններ, որտեղ վերջին ժամանակ-

ներս թուլացրել են ուշադրությունը եգիպտացորենի մըշակման նկատմամբ։ Դրա հետևանքով մի շարք շրջաններում այդ կուլտուրայի բերքը ցածր է, քիչ սիլոս է կուտակվում։ Եվ դա բացատրվում է ոչ թե հողակլիմայական պայմաններով, այլ նրանով, որ չգիտեն այդ կուլտուրան խնամել, մշակել։ Ուստի հարկավոր է հաստատակամորեն սովորեցնել մարդկանց, առավել ևս այժմ, երբ կոլտնտեսություններն ու սովխոզները ավելի շատ հանքային պարարտանյութ կունենան, իսկ կերի կուլտուրաների մեջ պարարտանյութը բոլորից լավ անդրադառնում է եգիպտացորենի վրա։ Ես նկատի ունեմ կերի սիլոսացու կուլտուրաները։ Բայց չի կարելի խեղաթյուրումներ թույլ տալ։ Առանձին տնտեսություններ մեծ տարածությունների վրա եգիպտացորեն են ցանում, բայց շատ ցածր բերք են ստանում։ Այդպիսի տնտեսությունները պատրաստ չեն մեծ տարածությունների վրա այդ կուլտուրայի ցանքին, չեն կարողանում այն մշակել։ Մինչդեռ որոշ աշխատողներ երբեմն կոլտնտեսություններին ստիպում են ցանել այնքան եգիպտացորեն, որ տնտեսությունը չի կարողանում մշակել։ Թող կոլտնտեսականներն իրենք լուծեն, թե ինչքան է պետք եգիպտացորեն և կերի այլ կուլտուրաներ ցանել զարգացող անասնապահությունը կերով ապահովելու համար։

Լուծելով կոլտնտեսային-սովխոզային արտադրությունը ինտենսիվացնելու խնդիրները, մենք պետք է մեր պրակտիկայում օգտագործենք եղբայրական սոցիալիստական երկրներում առկա հետաքրքրական ու օգտակար ամեն ինչ։ Մեզ համար մեծ հետաքրքրություն է ներկայացնում կապիտալիստական որոշ երկրների գիտական նվաճումների ուսումնասիրությունը։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը այս կապակցությամբ բերում է մի շարք օրինակներ ԱՄՆ-ի պրակտիկայից, որտեղ արտադրվում է 3,3 միլիոն տոննա թռչունի միս, կամ մսի ընդհանուր արտադրության 17,3 տոկոսը։ Լյա Տորի ֆերմայում (Կալիֆորնիայի նահանգ) ֆերմերը տարեկան աճեցնում է 1,6 կիլոգրամ միջին քաշի 4 միլիոն բրոյլեր։ Մի պարբերաշրջանի ընթացքում՝ 9 շաբաթ 4 օրում, այսինքն 67 օրում, միաժամանակ աճեցվում է մեկ միլիոն բրոյլեր։ Մեկ բանվորն սպասարկում է 17 հազարական հավ պարունակող վեց թռչնանոց, այսինքն՝ ընդհանուր առմամբ 100 հազար թռչուն։ Մեկ կի-



լոգրամ մսի վրա ծախսվում է 2,02 կիլոգրամ կեր։

Ճառի մի մեծ բաժին նվիրված է գիտության նվաճումների և առաջավոր փորձի ակտիվ պրոպագանդման անհրաժեշտությանը։ Կա առաջավոր փորձի պրոպագանդման երկու ձև, նշում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը, ակտիվ և պասսիվ։ Մեզ մոտ, դժբախտաբար, հաճախ գերակշռում է պրոպագանդայի պասսիվ ձևը։ Գիտության նվաճումների և առաջավոր փորձի պրոպագանդման պասսիվ ձևը տառապում է այն թերությամբ, որ նա չունի հարձակողական բնույթ, որ գործը չի հասցվում մինչև վերջ, մինչև արտադրության մեջ նորի արմատավորումը։

Եթե աշխատողները չեն ուզում ուսումնասիրել և արմատավորել նորը, շատ դժվարությամբ են ընկալում գիտության ու պրակտիկայի նվաճումները, շարունակում են համառորեն կառչել հնին, ապա այդպիսի մարդկանց հարկավոր է փոխել և առաջ քաշել նորերին։ Հարկավոր է բարձրացնել գյուղատնտեսության աշխատողների, գիտական հիմնարկների, գիտնականների պատասխանատվությունը՝ արտադրության մեջ գիտության նվաճումների և առաջավոր փորձի արմատավորման համար։

Այնուհետև ընկ. Ն. Ս. Խրուշչովը խոսում է հացահատիկի և մյուս կուլտուրաների արտադրության ավելացման հնարավորությունները ավելի լրիվ օգտագործելու անհրաժեշտության մասին։ Այս տարի, պետական պլանին համապատասխան, հացահատիկի մթերումները պետք է հասցվեն 4 միլիարդ 100 միլիոն փթի։ Այժմ կարևոր է ժամանակը ձեռքից բաց չթողնել։ Աններելի սխալ կլիներ բերքատվության բարձրացման խնդրի լուծումը թողնել այնպիսի ժամանակաշրջանի, երբ լիովին բավարարված կլինի հանքային պարարտանյութերի պահանջմունքը։ Անհրաժեշտ է մտածել, թե ինչ է հարկավոր անել, որպեսզի արդեն այս տարի բարձրացվի աշնանացան կուլտուրաների բերքատվությունը Ուկրաինայում, Հյուսիսային Կովկասում, կենտրոնական-սևահողային և այլ շրջաններում։ Կարևոր է գյուղատնտեսության աշխատողների ուշադրությունը կենտրոնացնել ցանքի նախապատրաստության, բոլոր սովխոզներն ու կոլտնտեսությունները սորտային սերմացուով ապահովելու վրա։ Հարկավոր է պատրաստել կադրեր, լավագույն ձևով օգտագործել տեխնիկան։

Ընկ. Ն. Ս. Խրուշչովն ընդգծում է, որ անհրաժեշտ է բարձրացնել շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, բանջարեղենի բերքատվությունը և համախառն բերքը։

Գյուղատնտեսության բնագավառում մեր ամբողջ աշխատանքի կարևոր խնդիրներից մեկը, շարունակում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը, ետ մնացող կոլտնտեսությունները առաջավորների մակարդակին հասցնելն է։ Այս ուղղությամբ պարտիան շատ բան է արել։ Այժմ զգալիորեն փոքրացել է ետ մնացող կոլտնտեսությունների տեսակարար կշիռը, բայց և այնպես քիչ չեն արտադրության ցածր մակարդակ ունեցող տնտեսությունները։ Դրա հետևանքով երկիրը նախատեսվածից պակաս է ստանում շատ հացահատիկ, միս, կաթ և այլ մթերքներ։

Ներկայումս պարտիական կազմակերպությունները իրագործում են ետ մնացող կոլտնտեսությունների էկոնոմիկայի զարգացման միջոցառումները։ Այս հարցում գլխավորը տնտեսապես թույլ կոլտնտեսությունների ամրապնդումն է փորձված կադրերով, լավ կազմակերպիչներով ու մասնագետներով։ Երբ թույլ կոլտնտեսություններն են գալիս ընդունակ ղեկավարներ, գործն արմատապես փոխվում է։

Այդպիսի ղեկավարների աշխատանքում գլխավորն այն է, որ նրանք կարողացել են բարձրացնել բոլոր կոլտնտեսականների պատասխանատվությունն ու նյութական շահագրգռվածությունը գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման համար։

Իր ճառի մի մասը ընկ. Ն. Ս. Խրուշչովը նվիրեց կոլտնտեսականների կենսաթոշակային ապահովմանը։

Անհրաժեշտ է, որ մենք կոլտնտեսություններում սահմանենք սոցիալական ապահովության ավելի կայուն սիստեմ։ Կկամենայի որոշ նկատառումներ հայտնել այդ հարցի շուրջը։ Կարծում եմ, որ հարկավոր է ստեղծել սոցիալական ապահովության միութենական կենտրոնացված ֆոնդ և դրա հաշվին կենսաթոշակներ նշանակել կոլտնտեսականներին։ Այդ ֆոնդի ստեղծմանը ամենից առաջ պետք է մասնակցեն իրենք՝ կոլտնտեսությունները։ Մեզ նպատակահարմար է թվում սահմանել այնպիսի կարգ, որ կոլտնտեսություններն իրենց եկամուտներից մասհանումների որոշակի տոկոս մուծեն կոլտնտեսականների սոցիալական ապահովության ֆոնդը։ Ենթադրվում է 1964 թվականին միջոցների





անհրաժեշտ ռեզերվ ստեղծելու համար մասհանել եկամուտների երկու տոկոսը, իսկ 1965 թվականից սկսած կենսաթոշակային ֆոնդը մասհանումներ մուծել կոլտնտեսությունների եկամուտների չորս տոկոսի չափով։

Առաջավոր տնտեսությունների ղեկավարներն առաջարկում են սահմանել այնպիսի կարգ, որ այն կոլտնտեսությունների կոլտնտեսականները, որտեղ տնտեսությունը ավելի ցածր մակարդակով է վարվում, հավասար կենսաթոշակ չստանան մյուս այն կոլտնտեսականների հետ, որոնք իրենց տնտեսությունը վարում են ավելի ինտենսիվ կերպով, երկրի համար ստեղծում ավելի շատ հարստություններ։

Կարծում եմ, որ դա իրավացի առաջարկ է։ Նա, ով ավելի արտադրողաբար է աշխատում, ավելի շատ մթերքներ արտադրում, պետք է իր աշխատանքի համար ստանա ավելի շատ, ինչպես նաև ծերության դեպքում ավելի լավ ապահովված լինի։

Ապա ընկ. Ն. Ս. Խրուշչովը կանգ առավ արդյունաբերության և ժողովրդական տնտեսության պլանավորման մի շարք հարցերի վրա։ Նա նշում է, որ արդյունաբերության, կապիտալ շինարարության, տրանսպորտի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի գծով յոթնամյա պլանի առաջադրանքները հաջողությամբ կատարվում են։

Կապիտալիզմի աշխարհը, Ամերիկայի Միացյալ Նահանգները, ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը, արդեն տառացիորեն զգում են մեր շունչը, տեսնում են, որ սովետական արդյունաբերությունը մի շարք ճյուղերում հասնում է և նույնիսկ անցել է Ամերիկայի Միացյալ Նահանգների արդյունաբերությունից։

Սակայն միամտություն կլիներ կարծել, թե մեր հակառակորդներն ուրախանում են Սովետական Միության հաջողություններով։ Անվստահությունը մեր հակառակորդների մեջ վախ է ծնում, իսկ վախը վատ խորհրդատու է։ Եվ ահա լույս աշխարհ են գալիս ԱՄՆ-ի կենտրոնական հետախուզական վարչության տխրահռչակ «փաստաթղթերը» այն մասին, թե սովետական էկոնոմիկան իբր ավելի դանդաղ տեմպերով է զարգանում։

Եկեք տեսնենք, թե իրականում ինչպես է սովետական էկոնոմիկայի և Ամերիկայի Միացյալ Նահանգների էկոնոմիկայի աճի տեմպերի հարցը։

Սովետական Միության արդյունաբերական ար-

տադրանքը տասը տարում աճել է 171 տոկոսով (2,7 անգամ), իսկ ԱՄՆ-ում՝ 36 տոկոսով։ Նյութական արտադրության բոլոր ճյուղերի համախառն արտադրանքը (համախառն հասարակական արդյունքը) այդ նույն ժամանակամիջոցում ՍՍՌՄ-ում աճել է 127 տոկոսով, կամ 2,3 անգամ, իսկ ԱՄՆ-ում՝ միայն 33 տոկոսով։

1963 թվականին Սովետական Միությունն արտադրեց ամերիկյան արդյունաբերության ծավալի արդեն մոտավորապես 65 տոկոսը, այնինչ դեռ 10 տարի առաջ մեր երկրի արդյունաբերական արտադրանքի ծավալը կազմում էր ԱՄՆ-ի արտադրանքի ընդամենը միայն մեկ երրորդը։

Իր ճառի եզրափակիչ մասում ընկ. Ն. Ս. Խրուշչովը կանգ առավ պաշտպանության ծախսերը կրճատելու ՍՍՌՄ-ի կողմից կիրառվող միջոցառումների վրա։ Իմպերիալիզմի գաղափարախոսները, ասում է նա, շատ են աղմկում, թե իբր Սովետական Միությունը սպառազինությունների և զինված ուժերի կրճատման է դիմում՝ էկոնոմիկայի զարգացման դժվարություններից ստիպված։ Այս ամենը, իհարկե, մտացածին բաներ են։

Սովետական Միությունը ռազմական ծախսերի որոշ կրճատման դիմեց ոչ նրա համար, որ մենք հնարավորություն չունենք անհրաժեշտ միջոցներ հատկացնել, այլ նրա համար, որ դա նպատակահարմար ենք համարում, և դա չի անդրադառնա մեր զինված ուժերի հզորության վրա։ Ընկ. Ն. Ս. Խրուշչովը այնուհետև ընդգծում է, որ եթե մենք թուլացնենք ուշադրությունը մեր տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման նկատմամբ, ապա իմպերիալիստները կարող են մեզ հետ խոսել սկսել սպառնալիքների և ուլտիմատումների լեզվով։ Հարկավոր է նկատի ունենալ, որ խաղաղության, կոմունիզմի կառուցման պայքարի ելքը կախված է մեր հաջողություններից, մեր էկոնոմիկայի վիճակից։

Կոմունիստական պարտիան վստահ է, ասում է վերջում ընկ. Ն. Ս. Խրուշչովը, որ Սովետական Միությունը լավ է գիտակցում, թե ինչպիսի մեծ պատմական խնդիր է դրված մեր երկրի առջև, և նա ամեն ինչ կանի, որպեսզի կոմունիստական շինարարության ծրագիրը կենսագործվի։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովի ճառը, որ լսվեց հսկայական ուշադրությամբ, բազմիցս ընդհատվում էր պարտիայի Կենտրոնական կոմիտեի պլենումի բոլոր մասնակիցների բուռն ծափահարություններով։ (ՏԱՍՍ)



# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

Մարտի 8-ը ամբողջ աշխարհի աշխատավոր կանանց տոնն է, ազատության, հավասարության, խաղաղության, բարեկամության և ժողովուրդների երջանկության համար մղվող պայքարում նրանց միասնության ու համերաշխության միջազգային օրը։

Այդ օրը հանրագումարի են բերվում աշխարհի կանանց ձեռք բերած նվաճումները և նշվում նրանց հետագա պայքարի խնդիրները։

Լենինը մեծ տեղ էր տալիս կնոջ դերին հասարակական կյանքում։ Նա նշել է, որ մասսաներին քաղաքականության մեջ ներգրավել չի կարելի՝ առանց քաղաքականության մեջ կանանց ներգրավելու։ Ավելին, նա գրել է, որ «Չի կարող սոցիալիստական հեղաշրջում լինել, եթե աշխատավոր կանանց հսկայական մասը նրան զգալի մասնակցություն ցույց չտա»։

Կանայք ամեն կերպ մասնակցել են սոցիալական պայքարին։ Հանրահայտ է Կլարա Ցետկինի, Ռոզա Լյուքսեմբուրգի, Նադեժդա Կրուպսկայայի, Լուիզա Միշելի և շատ ուրիշ խոշոր կին գործիչների անուններ, որոնք ռևոլյուցիոն պայքարի մեջ նետվեցին հանուն կնոջ ազատագրության, հանուն մարդկության լավագույն ապագայի։

Դարեր շարունակ կանանց անիրավահավասար, ստրկական վիճակը նրանց մղել է պայքարել տղամարդու հետ հավասար իրավունքներ ձեռք բերելու, իր արժանապատվությունը հարգելու, այդ ճնշված վիճակից ազատագրվելու համար։ Լենինը, մեր պարտիան կնոջ ազատագրումը կապում էին բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարի հետ և այդ ռևոլյուցիոն պայքարի հաղթանակի մեջ էին տեսնում կանանց իրավահավասարության, ազատագրման հարցի լուծումը։ Ուստի կանանց մասնակցությունը ռևոլյուցիոն պայքարին ինքնին հանդեցնում էր կանանց ազատագրության համար պայքարին, կամ ռևոլյուցիոն պայքարի հաղթանակը նշանակում էր կանանց ազատագրության հարցի լուծում։ Հոկտեմբերյան մեծ ռևոլյուցիան հաստատեց, որ իրոք կնոջ ազատագրումը կապված է բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարի հետ, այդ գլխավոր

հարցի բաղկացուցիչ մասն է հանդիսանում։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակը պատմության մեջ առաջին անգամ ազատություն բերեց կանանց, կինը տղամարդուն իրավահավասար դարձավ, նրանց համար ստեղծվեց սովորելու, աշխատելու, ստեղծագործելու, քաղաքական-հասարակական կյանքին մասնակցելու լայն ասպարեզ։

Ծանր էր կանանց վիճակը նախառևոլյուցիոն Ռուսաստանում։ Ոտնահարված էր կնոջ արժանապատվությունը, կանայք զրկված էին քաղաքական իրավունքներից։ Վարձու աշխատանքով զբաղված կանանց 80 տոկոսը տնային ծառայողներ և բատրակներ էին, միայն 13 տոկոսն էր աշխատում արդյունաբերության և 4 տոկոսը՝ լուսավորության ու առողջապահության բնագավառում։ Իրենց աշխատանքի համար նրանք ստանում էին երկու անգամ քիչ, քան նույն աշխատանքը կատարող տղամարդիկ։ Բժշկական օգնության բացակայության հետևանքով ամեն տարի ծննդաբերության ժամանակ մահանում էին 30 հազար կանայք։ Կանանց չէր թույլատրվում զբաղվել դասախոսական և գիտական գործունեությամբ։ Նրանց 86,3 տոկոսը անգրագետ էր։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո արմատապես փոխվեց կանանց դրությունը։ Կանայք ստացան լիակատար ազատություն, աշխատելու և ստեղծագործելու լայն հնարավորություններ։

«Երկու տարվա ընթացքում,— գրում էր Լենինը 1919 թվականին,—սովետական իշխանությունը ամենահետամնաց երկրներից մեկում կնոջ ազատագրման համար, «ուժեղ» սեռի հետ նրա հավասարության համար այնքան բան է արել, որքան 130 տարվա ընթացքում չեն արել ամբողջ աշխարհի առաջավոր, լուսավորված «դեմոկրատական» բոլոր ռեսպուբլիկաները միասին»։

Բարձր գնահատելով կանանց դերը կյանքում, մեծ հավատով Լենինը առաջարկում էր համարձակորեն լայն ասպարեզ տալ նրանց, առաջ քաշել, աճեցնել, շարժման մեջ ներգրավել։ Եվ, իսկապես, կանայք արդարացրին այդ հույսերը։ Նրանք ոչ միայն ակտիվորեն մասնակցեցին մեր երկրում շահագործողների տապալմանը, ռևոլյուցիայի հաղթանակին, այլև սովետական իշխանության ամրապնդմանը և սոցիալիզմի կառուցմանը։ Սովետական կանայք ներկայումս անձնազոհ կերպով մասնակցում են մեր երկրում կոմունիստական շինարարության մեծ գործին։



Սովետական իշխանության տարիներին աճել է կանանց բոլորովին նոր սերունդ, որոնց հոգու գեղեցկությամբ, արիությամբ, մեծ կամքով ու աշխատանքային եռանդով, կոմունիզմի գործին նվիրվածությամբ հպարտանում են մեր ժողովուրդը, ամբողջ աշխարհի աշխատավորները։ ՍՍՌՄ-ում չկա մի բնագավառ, որտեղ չաշխատի կինը և չգրավի իր պատվավոր տեղը։ Ժողովրդական տնտեսության մեջ կանայք կազմում են բանվորների և ծառայողների ընդհանուր թվի 48 տոկոսը կամ 47,6 միլիոն մարդ։ Մեր երկրում բարձրագույն կրթություն ունեցողների 54 տոկոսը, կամ 5,5 միլիոնը կանայք են։ Երկրում հաշվվում են 1.400 հազար կին ուսուցիչներ, որոնք կազմում են ուսուցիչների ընդհանուր թվի 70 տոկոսը, 300 հազարից ավելի բժիշկներ, որոնք կազմում են բժիշկների ընդհանուր թվի 74 տոկոսը։ Սովետական ինժեներների 29 տոկոսը կանայք են։ Գիտական աշխատանքով են զբաղվում 150 հազար կանայք կամ գիտական աշխատողների ընդհանուր թվի 37 տոկոսը։ Ավելի քան 31 հազար կանայք ունեն դոկտորի և գիտության թեկնածուի գիտական աստիճան, որը կազմում է գիտական կոչում ունեցողների 27 տոկոսը։ Մոտ 800 կանայք ակադեմիկոսներ են, ակադեմիայի թղթակից-անդամներ և պրոֆեսորներ։ Դրեթե 13 հազար կանայք դոցենտ են և ավագ գիտական աշխատող։

Սովետական կանայք իրենց փայլուն կերպով դրսևորեցին գրականության ու արվեստի բնագավառում։ ՍՍՌՄ գրողների միության կազմում կան 698 կին գրողներ, ժուռնալիստների միության անդամ են 4.000 կանայք, ճարտարապետների միության անդամ՝ 2,4 հազար կանայք, նկարիչների միության անդամ՝ 2.300 կանայք, կոմպոզիտորների միության անդամ՝ 212 կին կոմպոզիտորներ-երաժշտագետներ։ Գիտության, տեխնիկայի, գրականության և արվեստի բնագավառներում լենինյան և պետական մրցանակներ են ստացել 751 կանայք։

Հայտնի են սովետական տաղանդավոր կին գրողներ՝ Աննա Կարավաևան, Վերա Պանովան, Գալինա Նիկոլաևան, Մարիետտա Շահինյանը, Վերա Ինբերը, Սիլվա Կապուտիկյանը և ուրիշներ։ Մեր երկրի սահմաններից դուրս մեծ ճանաչում ունեն արվեստի փայլուն

ստողեր՝ Գալինա Ուլանովան, Օլգա Լեպեշինսկայան, Մայա Պլիսեցկայան, Գոհար Գասպարյանը, Զարա Դոլուխանյանը և շատ ուրիշներ։
Լենինը առանձնահատուկ նշանակություն էր տալիս կանանց մասնակցությանը պետական կառավարման գործում։ Ներկայումս ՍՍՌՄ բարձրագույն օրգանում՝ Գերագույն սովետի կազմում կան 400 կին դեպուտատ-
ներ, որ գերազանցում է կապիտալիստական բոլոր
երկրների պառլամենտներում ընտրված կանանց թիվն։
Միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների գերա-
գույն սովետների դեպուտատներ են 2.430 կանայք, որ
կազմում է բոլոր դեպուտատների ընդհանուր թվի 32
տոկոսը։ Տեղական սովետների կազմում կանայք կազ-
մում են դեպուտատների ընդհանուր թվի 41 տոկոսը։
Մեր երկրում ղեկավար աշխատողների և մասնագետնե-
րի ընդհանուր թվի 50 տոկոսը կազմում են կանայք։
Մեծ է սովետական կանանց ավանդը մեր երկրի է-
կոնոմիկայի բուռն զարգացման ասպարեզում։ Բազմա-
թիվ են անվանի բանվորուհիներ, կոլտնտեսուհիներ,
որոնք անձնվիրաբար պայքարում են ժողովրդական
տնտեսության զարգացման համար։ Պարտիան ու կա-
ռավարությունն ըստ արժանվույն են գնահատել կա-
նանց աշխատանքը։ 2.879 կանանց շնորհվել է սոցիա-
լիստական աշխատանքի հերոսի կոչում, տարբեր շքա-
նշաններով պարգևատրվել են մոտ 226 հազար 400
կանայք, որից Լենինի շքանշան են ստացել 52 հազար
315 հոգի։ Մեր ռեսպուբլիկայում սոցիալիստական աշ-
խատանքի հերոսի բարձր կոչման են արժանացել 69
կանայք, իսկ 634 կին ստացել են Լենինի շքանշան։
Անցյալում իրավազուրկ, ճնշված հայ կինը միայն
սովետական իշխանության շնորհիվ ազատություն
ստացավ։ Այժմ Հայաստանում ժողովրդական տնտե-
սության մեջ աշխատողների 38 տոկոսը կանայք են։
Կոլտնտեսային գյուղում նրանք կազմում են 58 տոկո-
սը։ Առողջապահության ասպարեզում կանայք կազմում
են 76 տոկոս, լուսավորության բնագավառում՝ 55 տո-
կոս, գիտական աշխատանք են կատարում 1.611 կա-
նայք, կամ գիտաշխատողների ընդհանուր թվի 32
տոկոսը։ Գիտական կոչում ունեն 458 կանայք, որոնցից
պրոֆեսորներ են 5, դոցենտ՝ 89 հոգի։ Ռեսպուբլիկայի
Գերագույն սովետի դեպուտատ են 92 կին, կամ դեպու-
տատների ընդհանուր թվի 32 տոկոսը, տեղական սո-
վետներում ընտրվել են 6.729 կին դեպուտատներ, որ



կազմում է դեպուտատների ընդհանուր թվի 37 տոկոսը։
Ներկայումս ռեսպուբլիկայի բուհերում սովորողների
ընդհանուր թվի ավելի քան 43 տոկոսը աղջիկներ են։
Մեր երկրում մեծ պատվի են արժանանում և հո-
գատարությամբ են շրջապատված մայրերը։ Ամեն ինչ
արվում է նրանց աշխատանքը թեթևացնելու համար։
Երկրում ստեղծված են մանկական կոնսուլտացիաների,
մանկամսուրների, մանկապարտեզների, գիշերօթիկ
դպրոցների, պիոներական ճամբարների, մոր ու մանկան
հանգստյան տների, հասարակական սննդի լայն ցանց,
որը գնալով ընդլայնվում է։ Տարեցտարի ավելանում է
սառնարանների, լվացքի, կարի մեքենաների և կենցա-
ղային այլ առարկաների արտադրությունը, որոնք զգա-
լի չափով թեթևացնում են կանանց գործը։
Սովետական կանայք իրենց հերոսաբար դրսևորե-
ցին պատերազմի ծանր օրերին։ Հայրենական մեծ պա-
տերազմի հերոսական տարեգրության մեջ գրվել են
շատ հերոս կանանց անուններ, որոնք իրենց սխրագոր-
ծություններով անմահ փառք բերեցին սովետական
կանանց։ Ռազմաճակատում, թե թիկունքում նրանք
անձնազոհ կերպով մարտնչում էին հաղթանակի հա-
մար։ Զգալի թվով կանայք թշնամու դեմ կռվում էին
պարտիզանական ջոկատներում։ Ռազմաճակատի առա-
ջին գծում բժշկուհիները, բուժքույրերը փրկում էին վի-
րավոր մարտիկների կյանքը, իսկ թիկունքում՝ գործա-
րաններում և կոլտնտեսային դաշտերում կանայք փո-
խարինում էին իրենց ամուսիններին, հայրերին, եղ-
բայրներին, անում էին ամեն ինչ հաղթանակը ապահո-
վելու համար։
Սովետական կառավարությունը, բարձր գնահատե-
լով կանանց ծառայությունները հայրենական պատե-
րազմում, 76 կանանց արժանացրեց Սովետական Միու-
թյան հերոսի բարձր կոչման։ Ավելի քան 120 հազար
կանայք պարգևատրվեցին Հայրենական պատերազմի
շքանշաններով ու մեդալներով։
Զոյա Կոսմոդեմյանսկայայի, Նատաշա Կովշովա-
յի, Նատաշա Պոլիկանովայի, Եվդոկիա Նիկուլինայի,
Լյուբա Զեմսկայայի և բազմաթիվ ուրիշ կին հերոսնե-
րի անունները այսօր երախտագիտությամբ է հիշում
սովետական ժողովուրդը։

Սովետական կանայք դարձել են կոմունիզմի գիտակից կառուցողներ։ Նրանք ընթանում են համաժողովրդական կոմունիստական շարժման ավանգարդում, ցույց են տալիս աշխատանքի արտադրողականության, բարեխղճության, հասարակական պարտքի կատարման հիանալի օրինակներ, նոր մարդու բարոյական բարձր գծեր։ Սովետական կնոջ ամենալավագույն հատկությունների մարմնացումն է հանդիսանում սովետական և բոլոր երկրների կանանց հպարտությունը դարձած, աշխարհի առաջին կին տիեզերագնաց Վալենտինա Նիկոլաևա-Տերեշկովան, որի անօրինակ հերոսությունը ծառայում է խաղաղության և առաջադիմության գործին։

Եթե կապիտալի լուծը թոթափած երկրներում կանայք առաջադիմում են կյանքի բոլոր բնագավառներում, համաժողովրդական հարգանքի ու պատվի են արժանանում, հոգատարությամբ են շրջապատված, ապա կապիտալիստական ու գաղութային երկրներում նրանք դեռևս մնում են ճնշված, իրավազուրկ վիճակում։ Կանանց ասպարեզ չի տրվում ուսման, աշխատանքի, կուլտուրայի բնագավառներում։ Բնորոշ է, օրինակ, որ Իսպանիայում վերջին 30 տարվա ընթացքում ինժեներ են դարձել ընդամենը 3 աղջիկ, այժմ այնտեղ ուսանողների ընդհանուր թվի միայն 5 տոկոսն են աղջիկներ, որ ուսանողական հասակ ունեցող աղջիկների 0,5 տոկոսն է կազմում։ ԱՄՆ-ում մոտ 2 միլիոնի է հասնում գործազուրկ կանանց թիվը. Նման վիճակ է տիրում կապիտալիստական մյուս երկրներում։

Սովետական և աշխարհի բոլոր երկրների կանայք անգնահատելի ավանդ են մուծում արդիականության գլխավոր հարցի՝ խաղաղության պաշտպանության գործում, նոր, ջերմամիջուկային պատերազմի դեմ մղվող համաժողովրդական շարժման մեջ։

Կանանց համաշխարհային կոնգրեսին ուղղված ուղերձում Ն. Ս. Խրուշչովը գրել է. «Աշխարհի կայուն խաղաղությունը աներևակայելի է առանց կանանց աշխատանքի ու պայքարի»։ Խաղաղության համար մղվող պայքարին, որը լայն ծավալ ստացավ հետպատերազմյան տարիներին, աշխարհի կանայք եռանդուն մասնակցություն են ցույց տալիս։ Դեռ 1945 թվականի դեկտեմբերին 40 երկրների դեմոկրատ կանանց ներկայացուցիչները հիմնադրեցին կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիա, որի նպատակն էր կանանց



միջազգային լայն շարժում ծավալել՝ հանուն խաղաղության պաշտպանության։ Ներկայումս այդ կազմակերպության դրոշի ներքո պայքարում են 90 երկրների ավելի քան 200 միլիոն կանայք։ 1963 թվականի հունիսին Մոսկվայում կայացած կանանց համաշխարհային կոնգրեսը, որին մասնակցում էին 120 երկրների 1.500 պատվիրակներ, ներկայացնելով ավելի քան 200 միլիոն կանանց, ցույց տվեց, թե որպիսի մեծ վճռականությամբ են հանդես գալիս աշխարհի կանայք՝ ընդդեմ պատերազմի, սպառազինությունների մրցավազքի, ատոմային ռումբերի փորձարկումների, հանուն կայուն և տևական խաղաղության։

Սովետական Միության կանայք, որոնք գտնվում են խաղաղության համար պայքարող կանանց ավանգարդում, բազմիցս դիմել են աշխարհի կանանց, ԱՄՆ-ի, Անգլիայի կանանց ու մայրերին, կոչ անելով ուժեղացնել պայքարը մասսայական ոչնչացման զենքի արգելման և միջազգային համագործակցության հասնելու համար։

Այս տարի, մարտի 8-ի օրը, աշխարհի միլիոնավոր կանայք նոր վճռականությամբ հանդես կգան հանուն խաղաղության, ընդդեմ ջերմամիջուկային պատերազմի սպառնալիքի։ Կապիտալիստական և գաղութային երկրների կանայք իրենց անհողդողդ կամքը ցույց կտան՝ կանանց իրավունքների պաշտպանության, իրավահավասարության, ազգային ազատագրության և անկախության, դեմոկրատիայի ու սոցիալական պրոգրեսի համար մղվող պայքարում։ Սովետական և սոցիալիզմի մյուս երկրների կանայք իրենց համերաշխությունը կցուցադրեն աշխարհի կանանց հետ՝ մեր ժամանակի ամենակենսական հարցում՝ խաղաղության պաշտպանության հարցում, կցուցադրեն իրենց անսասան կամքը նոր կյանքի կառուցման ասպարեզում՝ նորանոր հաջողությունների հասնելու համար։

ՆԻՆԵԼ ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ԱԳԻՏԱՑԻԱՆ ՖԱԲՐԻԿԱՅՈՒՄ

Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարում գովեստով խոսվեց Երևանի Շահումյանի շրջանի տրիկոտաժի ֆաբրիկայի կոլեկտիվի աշխատանքի մասին։ Համագումարի պատգամավորները գոհունակությամբ ընդունեցին Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Յա. Զարոբյանի այն խոսքերը, որ տրիկոտաժի ֆաբրիկայի կոլեկտիվին շնորհվել է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի պատվավոր կոչում։

Այո, Շահումյանի տրիկոտաժի ֆաբրիկան կոմունիստական աշխատանքի ձեռնարկություն է։ Այդ աշխատանքային հաղթանակը նվաճելու գործում ակտիվ մասնակցություն են ունեցել նաև ֆաբրիկայի ագիտատորները։

ՍՄԿԿ Կենտկոմի 1963 թվականի հունիսյան պլենումից հետո ֆաբրիկայում ագիտացիոն-մասսայական աշխատանքը լայն թափ ընդունեց և ստացավ նոր բովանդակություն։ Ավելի քան 60 ագիտատորներ, որոնք արտադրության ղեկավարներ են, ինժեներներ, վարպետներ ու առաջավորներ, սիստեմատիկաբար ֆաբրիկայի աշխատողների և թաղամասի բնակիչների շրջանում մասսայականացնում են պարտիայի ու կառավարության որոշումները։ Օրինակ, ֆաբրիկայի ընդհանուր գործվածքային արտադրամասի պետ տեղակալ Ն. Օհանյանը լավագույն ագիտատորներից է։ Նա արդեն մի քանի զրույց նվիրել է ՍՄԿԿ Կենտկոմի 1963 թվականի դեկտեմբերյան պլենումի և Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարի արդյունքներին։

Ագիտատորներ Վ. Կարապետյանը, Գ. Մարտիրոսյանը, Ա. Սարգսյանը և շատ ուրիշներ, իրենց ամենօրյա քաղաքական և ագիտացիոն աշխատանքը կապում են տվյալ բրիգադի և տեղամասի առջև ծառացած խնդիրների հետ, միաժամանակ տարածելով առաջավոր բանվորների և վարպետների աշխատանքի ուսանելի փորձը։ Ագիտացիոն ժամերին, պատի թերթերի միջոցով մասսայականացվել է անվանի տրիկոտաժագործներ Պ. Յուղչյանի, Մ. Խարիկյանի, Մ. Հակոբյանի և



մյուս առաջավորների փորձը։ Լավագույն ագիտատորներից է Գ. Մարտիրոսյանը, որը ղեկավարում է մի խոշոր տեղամաս, ուր աշխատում են ավելի քան 300 բանվոր։ Ագիտատորը նրանցից յուրաքանչյուրի հետ առանձին մոտեցում ունի։ Այդ տեղամասի կոլեկտիվն այժմ աշխատում է առանց խոտանողի։ Իր զրույցներից մեկի ժամանակ նա ունկնդիրներին պատմում էր աշխատանքի մարդկանց մասին, նրանց մասին, որոնք իրենց պարտավորությունները կատարում են գերազանց։ Երբ մամուլում հրապարակվեցին Նադեժդա Զագլադայի և լենինգրադցի բանվոր, ՌՍՖՍՌ Գերագույն սովետի դեպուտատ Իվան Լեոնովի նամակները, նա իր հերթական զրույցներից մեկը նվիրեց բանվորական խղճին և աշխատանքային դաստիարակության հարցին։

Հենց այդ զրույցի ընթացքում շատ բանվորներ արտահայտվեցին բանվորական պատվի ու խղճի մասին և առաջարկեցին աշխատել առանց խոտանողի։ Դա նշանակում է, որ ամեն մեկը պատասխանատու է իր արտադրանքի որակի համար։

Սկսվեցին առաջին քայլերը։ Արտադրական տեղամասի առանձին բրիգադներում վերացվեցին խոտանողների հաստիքները։ Ագիտատոր Մարտիրոսյանը այդ նախաձեռնությունը մասսայականացրեց նաև մյուս տեղամասերում։ Այդ հիանալի շարժման մեջ ընդգրկվեցին տասնյակ, ապա հարյուրավոր աշխատողներ։

Ագիտատորը ամենից առաջ մարդկանց դաստիարակ է։ Եվ ագիտատոր Գ. Մարտիրոսյանը այդ բնագավառում նույնպես աչքի է ընկնում։ Հերթափոխության աշխատողներից մեկը՝ Լ. Կարապետյանը, թույլ էր տվել անվայել արարք։ Նա գրպանել էր կոճակներ։ Դեպքը մեծ չէր, բայց չէր կարելի անուշադրության մատնել։ Ագիտատորը իր մոտ կանչեց Լենային, երկար զրուցեց նրա հետ։ Խորհրդակցելով Լենայի ընկերուհիների հետ, ագիտատորը նրա հարցը տեղափոխեց տեղամասի ընդհանուր ժողով, որտեղ աշխատանքային ընկերուհիները խստորեն դատապարտեցին Լենայի արարքը, որն արատավորում էր իր և ընկերների ու ամբողջ կոլեկտիվի պատիվը։

Այդ դեպքի քննարկումը դաս հանդիսացավ Լենայի համար և օրինակ ծառայեց մյուսներին։

Ագիտացիոն աշխատանքում ագիտատորները հմտորեն օգտագործում են նաև արտադրամասերի կար-

միր անկյունները, պատի թերթերը, «Կայծակ» հաղորդումները։

Մի քանի ամիս առաջ հենքագործվածքային արտադրամասում փակցվեց «Կայծակ» հաղորդագրությունը։ Այդ հաղորդագրության մեջ ասված էր, որ հենքագործվածքային արտադրական տեղամասի բանվորուհի Վիկտորյա Համբարձումյանը հանդես է եկել նոր նախաձեռնությամբ։ Նա խոստացել է իր սպասարկած «Վուլկան—9» մեքենայի արտադրողականությունը բարձրացնել 50 տոկոսով, և յուրաքանչյուր օրում մեկ կիլոգրամի փոխարեն թողարկել 1,5 կիլոգրամ կապրոնե գործվածք։ Մրցության առաջավոր բանվորուհին խնդրել էր վերանայել հին նորմաները և դրա փոխարեն սահմանել նորը՝ մեկի դիմաց մեկուկես նորմա։

Ինչպես տեղամասի, այնպես էլ ֆաբրիկայի տասնյակ ագիտատորներ սկսեցին լայնորեն մասսայականացնել այդ առաջավոր բանվորուհու հիանալի նախաձեռնությունը։ Եվ դա տվեց իր արդյունքը։ Ֆաբրիկայի հարյուրավոր բանվորներ ու բանվորուհիներ սկսեցին օրական կատարել մեկ ու կես և ավելի նորմա։

Արտադրական ձեռնարկությունների առջև այժմ լուրջ խնդիր է դրված՝ լայնորեն օգտագործել տեխնիկայի նվաճումները, արտադրության մեջ արմատավորել աշխատանքի առաջադիմական մեթոդները և ավտոմատացնել աշխատատար պրոցեսները։

Ահա այդ գործում ֆաբրիկայի պարտիական կազմակերպությանը օգնության եկան նաև ագիտատորները, որոնք ագիտացիոն ժամերին բանվորներին պարզաբանում էին այդ խնդիրները և օգնում նրանց՝ դրանք կատարելու համար։ Կարճ ժամանակում ֆաբրիկայում տեղադրվեցին ստացված նոր սարքավորումներ և մեքենաներ, բանվորներն սկսեցին տիրապետել դրանց, որի շնորհիվ բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը և արտադրանքի որակը։

Տրիկոտաժի ֆաբրիկայում օրինակելիորեն են կազմակերպված ագիտացիոն-մասսայական աշխատանքները, որոնք խսպաս են դրված պլանների կատարման, արտադրության կուլտուրայի բարձրացման և աշխատողների կոմունիստական դաստիարակության մեծ գործին։



Ագիտկոլեկտիվի անդամները հետաքրքիր և բովանդակալից զրույցներ են կազմակերպում նաև թաղամասի բնակչության շրջանում։

Ֆաբրիկայի ագիտատորներին օգնելու և նրանց ուղղություն ցույց տալու գործում խրախուսելի աշխատանք է կատարում ագիտկոլեկտիվը, որի ղեկավարն է ֆաբրիկայի դիրեկտոր Զ. Տոնոյանը։ Ագիտկոլեկտիվն ունի իր աշխատանքի պլանը, ըստ որի սիստեմատիկաբար կազմակերպվում են ագիտատորների սեմինարներ և խորհրդակցություններ, ագիտատորներին տրվում է մեթոդական օգնություն։

Հիանալի նախաձեռնություն է հանդիսանում նաև ֆաբրիկայում հասարակական հիմունքներով ստեղծված պարտիական լուսավորության կաբինետը, որը ղեկավարում է ինժեներ Հ. Հայրապետյանը։ Այս կաբինետը ֆաբրիկայի ագիտատորների և պրոպագանդիստների լավագույն խորհրդականն է։ Նա ունի հարուստ գրադարան և ընթերցարան, որն ստանում է տասնյակ թերթեր և ամսագրեր։ Կաբինետում աշխատողներին օգնելու նպատակով կազմակերպվում են առանձին ցուցափեղկեր և ցուցահանդեսներ։

Այս օրերին ֆաբրիկայի ագիտատորները բոլոր արտադրամասերում լայնորեն մասսայականացնում են ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումի և Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարի որոշումներն ու մոբիլիզացնում ֆաբրիկայի աշխատողներին՝ ընթացիկ տարվա արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու համար։

Ց. ՄԱՐՈՒԹՅԱՆ

# ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ Է ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ

(Թվեր և փաստեր)

Գործի վերածելով սոցիալիստական մրցույթում ստանձնած պարտավորությունները, պայքարելով պարտիայի առաջադրած խնդիրները կենսագործելու համար, մեր ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորները նշանակալի հաջողություններ ձեռք բերեցին 1963 թվականի պետական պլանների կատարման ասպարեզում: Ահա թվեր և փաստեր այդ մասին:

★ Սովետական Հայաստանի արդյունաբերության աշխատողները արդյունաբերության գծով համախառն արտադրանքի թողարկման 1963 թվականի տարեկան պլանը կատարեցին 101,9 տոկոսով:

★ Համախառն արտադրանքի աճը ռեսպուբլիկայում 1963 թվականին, 1962 թվականի համեմատությամբ, կազմեց 9,4 տոկոս, այդ թվում ժողտնտխորհի ձեռնարկությունների գծով՝ 9,3 տոկոս:

★ Քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքը 1963 թվականին, 1962 թվականի համեմատությամբ, աճել է 35 տոկոսով, մեքենաշինությանը և մետաղամշակմանը՝ 18 տոկոսով, շինանյութերինը՝ 14, անտառային, թղթի և փայտամշակման արդյունաբերությանը՝ 7, թեթև արդյունաբերությանը՝ 3 տոկոսով:

★ Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները 1963 թվականին արտադրել են արհեստական և սինթետիկ թել՝ 4.710 տոննա, կաուստիկ սոդա՝ 35,2 հազար տոննա, հանքային պարարտանյութ՝ 203 հազար տոննա, ծծմբաթթու՝ 49,2 հազար տոննա:

★ 1963 թվականին արտադրվել է 1.128 հազար հատ ավտոդող, 1.008 հատ դարբնոցա-մամլիչ մեքենա, 8.654 հատ մետաղահատ հաստոց, 51,8 հազար հատ կենտրոնախույս պոմպ, 29,5 միլիոն ռուբլու ավտոմատացման սարքեր, միջոցներ և պահեստամասեր, 620 հազար տոննա ցեմենտ, 448 հազար խորանարդ մետր հավաքովի երկաթբետոն, 80 միլիոն պայմանական սալիկ շիֆեր:

★ Ռեսպուբլիկայի էլեկտրաարդյունաբերությունը երկրի ժողովրդական տնտեսությանը տվել է 692 հազար կիլովատ փոփոխական հոսանքի էլեկտրաշարժիչ, 1.331 հազար կիլովատ փոփոխական հոսանքի գեներատոր, 704 հազար կիլովատ շարժական էլեկտրակայան, 4.239 հազար կիլովատ-ամպեր ուժային տրանսֆորմատոր:

★ Արտադրվել է նաև 12,8 հազար հատ էլեկտրազոդման սարքավորում, 73,1 միլիոն հատ լուսավորման էլեկտրալամպ, 109,6 հազար կիլոմետր տեղակայման հաղորդալար, 8.303 տոննա փաթույթալար և էմալալար:



★ 1963 թվականի ընթացքում ռեսպուբլիկայում արտադրվել է բամբակե գործվածք՝ 59,9 միլիոն քառակուսի մետր, բրդե՝ 5,8, մետաքսե՝ 7,1 միլիոն քառակուսի մետր:

★ 1963 թվականին արտադրվել է նաև 60,4 միլիոն ռուբլու կարի արտադրանք, 26,5 միլիոն հատ տրիկոտաժե սպիտակեղեն, 2.509 հազար հատ տրիկոտաժե վերնազգեստ, 6.192 հազար զույգ կաշվե կոշիկ, 2.087 հազար հատ կենցաղային ժամացույց, 13,4 միլիոն ռուբլու կահույք:

★ 1963 թվականին արտադրվել է միս (հումքի պետական ռեսուրսներից)՝ 18 հազար տոննա, երշիկեղեն՝ 5,8 հազար տոննա, յուղ (հումքի պետական ռեսուրսներից)՝ 2.381 տոննա, պանիր՝ 7,7 հազար տոննա, անարատ կաթնամթերք կաթի վերածած՝ 38 հազար տոննա և այլն:

★ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1963 թվականին, 1962 թվականի համեմատությամբ, ավելի է արտադրել մինչև 100 կիլովատ հզորության փոփոխական հոսանքի էլեկտրաշարժիչ՝ 66,9 հազար հատ, էլեկտրազոդման սարքավորում՝ 3.022 հատ, տեղակայման հաղորդալար՝ 21,4 հազար կիլոմետր, ցեմենտ՝ 97,7 հազար տոննա, հավաքովի երկաթ-բետոն՝ 97 հազար խորանարդ մետր, բամբակե գործվածք՝ 7,7 միլիոն քառակուսի մետր, անարատ կաթնամթերք՝ 5,8 հազար տոննա, ձեթ՝ 1.132 տոննա և այլն:

★ Անցյալ տարի ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել է ավելի քան 10 հազար գյուտ և արտադրության բարելավման ու կատարելագործման ռացիոնալիզատորական առաջարկ, որը մեկ տարվա հաշվով տալիս է ավելի քան 10 միլիոն ռուբլու խնայողություն:

★ Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը 1963 թվականին կատարված է 101,5 տոկոսով և այն 1962 թվականի համեմատությամբ աճել է 3,2 տոկոսով:

★ Ամբողջ արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցումից գերպլանային խնայողությունը կազմել է ավելի քան 10 միլիոն ռուբլի:

★ Չնայած անցյալ տարվա կլիմայական անբարենպաստ պայմաններին, խոտհնձի պլանը կատարվել է 152 տոկոսով, 1962 թվականի համեմատությամբ կուտակվեց 37 տոկոսով ավելի խոտ, 13 տոկոսով ավելի սիլոս, աշնանացան հացահատիկային կուլտուրաների ցանքի պլանը կատարվեց 102 տոկոսով, պտղատու այգիների գցման պլանը՝ 105 տոկոսով:

★ 1963 թվականին մսի արտադրությունն ավելացավ 5 տոկոսով, կաթինը՝ 6 տոկոսով, բրդինը՝ 15 տոկոսով:

★ Անասնապահական մթերքների պետական գնումները 1963 թվականին, 1962 թվականի համեմատությամբ, ավելացան հետևյալ չափերով, անասուններինը՝ 3 տոկոսով, կաթինը՝ 9, ձվինը՝ 12, բրդինը՝ 18 տոկոսով։

★ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 1963 թվականին, 1962 թվականի համեմատությամբ, ավելացել է 23,7 հազար գլխով կամ 4 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 8,8 հազար գլխով կամ 3,7 տոկոսով, ոչխարների ու այծերի գլխաքանակը՝ 128,6 հազար գլխով կամ 6 տոկոսով։

★ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը 1963 թվականին ստացավ 1.046 տրակտոր (ֆիզիկական միավոր) կամ 1.915 տրակտոր 15 ուժանոցի վերածած, 1.160 բեռնատար ավտոմեքենա, 150 հացահատիկային կոմբայն, 69 սիլոսահավաք, 5 եգիպտացորենահավաք, 16 ճակնդեղահավաք, 6 կարտոֆիլահավաք կոմբայն, կթի 122 հարմարանք և այլն։

★ Պետական կապիտալ ներդրումները 1963 թվականին, 1962 թվականի համեմատությամբ, աճել են 12 տոկոսով, այդ թվում արտադրական նշանակություն ունեցող օբյեկտներինը՝ 11 տոկոսով։

★ Մեծ հաջողություններ են ձեռք բերվել ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման գործում։ Պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը 1963 թվականին կազմեց 627 միլիոն ռուբլի և 1962 թվականի համեմատությամբ, համադրելի գներով, ավելացավ 6 տոկոսով։

★ Բնակչությանը 1963 թվականին, 1962 թվականի համեմատությամբ, վաճառվել է ալյուր, հաց և հացաբուլկեղեն՝ 103 տոկոս, միս, երշիկեղեն և այլ մսամթերք՝ 112 տոկոս, կենդանական յուղ՝ 101 տոկոս և այլն։

★ Անցյալ տարի, 1962 թվականի համեմատությամբ, բնակչությանը վաճառվել է ավելի շատ կահույք, կարի մեքենա, սառնարան, լվացքի մեքենա, հեռուստացույց, մարդատար ավտոմեքենա և այլն։

★ Ռեսպուբլիկայի բնակչության մեկ երրորդ մասը՝ 503 հազար մարդ, ընդգրկված է ուսուցման զանազան ձևերի մեջ։ Միայն հանրակրթական դպրոցներում սովորում է ավելի քան 450 հազար մարդ կամ 39,5 հազարով ավելի, քան անցյալ ուսումնական տարում։

★ Ռեսպուբլիկայում պետական միջոցների հաշվին, ինչպես նաև բնակչության միջոցների հաշվին և պետական վարկի օգնությամբ 1963 թվականին շահագործման հանձնվեցին 830 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, այդ թվում պետական շինարարության գծով՝ 650 հազար քառակուսի մետր։

★ Ռեսպուբլիկայի բնակչությունը անցած մեկ տարում, նախնական տվյալներով, աճել է ավելի քան 62,5 հազարով և առ 1-ը հունվարի 1964 թվականի կազմում էր մոտավորապես 2 միլիոն 70 հազար։



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Արտադրության ինտենսիվացումը, գյուղատնտեսության զարգացման գլխավոր ուղղությունն է, ճառ արտասանված ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 16-ի և 17-ի համարներում։*

Ի. Պ. ՎՈԼՈՎՉԵՆԿՈ— Գյուղատնտեսական մթերքների արտադրության արագ ավելացման համար պարարտանյութերի լայն կիրառման, ոռոգման զարգացման, կոմպլեքսային մեքենայացման և գիտության նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորման հիման վրա գյուղատնտեսական արտադրությունն ինտենսիվացնելու մասին, *զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 11-ի համարում։*

Գ. Ս. ՊԵՏՐՈՍՅԱՆ— *Հարակից* զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 19-ի համարում։*

## 2. Աշխատենք կուբանցիների օրինակով

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ, Կրասնոդարի երկրամասի կոլտնտեսականների և կոլտնտեսությունների, սովխոզների բանվորների ու բանվորուհիների, գյուղատնտեսության մասնագետների, գյուղատնտեսական հումքը վերամշակող արդյունաբերության և շինարարության աշխատողների սոցիալիստական պարտավորությունների մասին, *որոշում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 9-ի համարում։*

Կրասնոդարի երկրամասի կոլտնտեսականների և կոլտնտեսությունների, սովխոզների բանվորների ու բանվորուհիների, գյուղատնտեսության մասնագետների, գյուղատնտեսական հումքը վերամշակող արդյունաբերության և շինարարության աշխատողների սոցիալիստական պարտավորությունները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 9-ի համարում։*

## 3. Կանանց միջազգային օրը՝ մարտի 8-ը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանությունը և կնոջ դրությունը,

Երկեր, հատոր 30, էջ 131—135, Հայպետհրատ, 1951։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Աշխատավորուհիների միջազգային օրը, Երկեր, հատոր 32, էջ 191—193, Հայպետհրատ, 1952։

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիա (Հիմնական օրենք)։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Պարտիայի ու ժողովրդի բոլոր ուժերը կոմունիստական շինարարության պլանների կատարմանը, Եզրափակման խոսք, ասված ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում (1963)։

Յա. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ—Հայաստանի կոմպարտիայի գործունեությունը ժողովրդական տնտեսության հետագա զարգացման բնագավառում, զեկուցում, տրված ՀԿՊ XXIII համագումարին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 8-ի համարում։

## 4. Հայրենիքին տանք ավելի շատ գերպլանային քիմիական արտադրանք

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ Կենտկոմի, ՍՍՌՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի 1964 թվականի հունվարի 23-ի որոշումը, Պերմի, Կեմերովոյի, Վոլգոգրադի և Լուգանսկի մարզերի աշխատավորների նախաձեռնության մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 30-ի համարում։

Պերմի, Կեմերովոյի, Վոլգոգրադի և Լուգանսկի մարզերի աշխատավորների հայրենասիրական նախաձեռնությունը, սոցիալիստական պարտավորություն, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 30-ի համարում։

Յոթնամյակի 6-րդ տարվա առաջադրանքները կատարենք 103 տոկոսով, Երևանի քիմիական ձեռնարկությունների կոլեկտիվների հայրենասիրական նախաձեռնությունը, սոցիալիստական պարտավորություններ, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 28-ի համարում։

## 5. Անթերի կատարենք գարնան գյուղատնտեսական աշխատանքները

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գերազանց պատրաստվենք գարնանացանին, նամակ Լճաշենի կոլտնտեսականներից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի փետրվարի 8-ի համարում։

Գյուղի աշխատավորների պատվի գործը, «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1964 թվականի առաջին համարի առաջնորդողը։

---

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ա. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության պլանավորում, ուսումնական ձեռնարկ 8 պրակով, պրակ 2-րդ, Երևանի պետական համալսարանի հրատարակություն, 208 էջ, տպաքանակ 1300, գինը 28 կոպ.։

Ձեռնարկում քննարկվում են ժողովրդական տնտեսության պլանավորման մեթոդոլոգիական հիմքերը, հատվածքները, բաժինները ու ցուցանիշների սիստեմը, մատնանշվում են պլանավորվող օրգանների ֆունկցիաները և պետական միասնական պլանը կազմելու կարգը։ Հատուկ տեղ է դրավում մաթեմատիկական մեթոդների կիրառումը ժողովրդական տնտեսության պլանավորման մեջ։

Հ. Ե. ԹՈՒՄԱՆՅԱՆ, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության պլանավորում, պրակ 4-րդ, 130 էջ, տպաքանակ 1300, գինը 22 կոպ.։

Սույն պրակը նվիրված է ժողովրդական տնտեսության պլանի շինարարական ծրագրին և սոցիալիստական արտադրության տեղաբաշխմանը։

Դ. Վ. ԿՈՒԲԱՐԿԻՆ ԵՎ Ե. Ա. ԼԵՎԻՏԻՆ, Հետաքրքրաշարժ ռադիոտեխնիկա, Հայպետհրատ, 304 էջ, տպաքանակ 5000, գինը 46 կոպ.։

Սույն գիրքը ռադիոտեխնիկայի ամենատարբեր բնագավառներից վերցրած օրինակների ժողովածու է, ուր լուսաբանվում է ռադիոտեխնիկական սարքերում տեղի ունեցող ֆիզիկական պրոցեսների էությունը և ռադիոտեխնիկայի փոխադարձ կապը գիտության ու տեխնիկայի այլ բնագավառների հետ։ Գրքի հիմնական նպատակն է օժանդակել ընթերցողի տեխնիկական ու գիտական մտածողության զարգացմանը, նրա մեջ պատվաստել երևույթների ֆիզիկական էությունը պարզաբանելու հմտություններ։

Գ. Ե. ՄԽԻԹԱՐՅԱՆ, Ազատություն և անհրաժեշտություն, Երևանի պետական համալսարանի հրատարակություն, 309 էջ, տպաքանակ 1000, գինը 1 ռ. 10 կոպ.։

Այս աշխատության մեջ լուսաբանվում է ազատության և անհրաժեշտության, նրանց հարաբերակցության և դիալեկտիկական փոխազդեցության մարքսիստական ըմբռնումը։ Հիմնական գլուխներում տրվում են ազատության դրսևորման ձևերը սոցիալիստական ու կոմունիստական շինարարության պրոցեսում։

Ա. ՇԵՊԵԼԵՎ, Ատաղձագործական աշխատանքներ, Հայպետհրատ, տպաքանակ 2000, գինը 31 կոպ.։

Գիրքը նախատեսված է կոլտնտեսությունների ու սովխոզների արհեստանոցների երիտասարդ ատաղձագործների, բնակարանն իրենց ուժերով վերանորոգող աշխատավորների, ինքնաշեն սարքերով զբաղվողների, դպրոցների ու արհեստագործական ուսումնարանների սովորողների համար։

---

ԻՆդեքս՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 4
## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ՎՖ 06026 Պատվեր 137 Տիրաժ 9637

Հանձնված է արտադրության 11/II 1964 թ.:
Ստորագրված է տպագրության 20/II 1964 թ.:

ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի
Պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության II տպարան,
Երևան, Կնունյանցի № 8:
Գինը 8 կոպ.: